1917 № 17—ՄԱՅԻՍԻ 7 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ, ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արասաքալեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից
Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



# ՄԻ ԿԱՅՍՐՈՒԹԵԱՆ ՎԱԽՃԱՆԸ

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԹԻՒՐՔԵՐԻ ԳՈՐԾԸ

1908 թուի յուլիսի 25-ին, մօտաւորապէս ութ ու կէս տարի առաջ, Օսմանեան կայսրութիւնն տապալուեց մի յեղափոխութեամբ։ Ծերունի Սուլթան արիւնարբու Աբդիւլ Համիդը տեղի տուեց երիտասարդ թիւրքերին, երդուեց սահմանադրութեան հաւատարիմ մնալու և այդ շարժումը ամբողջ աշխարհում, մանաւորապէս Ֆրանսայում, համակրանքով ընդունուեց, ողջ տարէքերն այդ շարժումը ազատական էին կարծում։

Թիւրքիային կարելի՞ էր արդեօք շնորհաւորել այդ յեղաշրջման համար։ Եթէ մի ակնարկ ձգենք նրա արդի քարտէզին վրայ, դիւրութեամբ կարող ենք պատասխանել այս հարցման։

Օսմ. կայսրութիւնն 4 միլիոն քառակուսի կիլոմետր տարածութեամբ և 40 միլիոն բնակչութեամբ մի ընդարձակ երկիր էր, երբ երիտասարդ թիւրքերն իշխանութեան գլուխն անցան։ Բայց արդի Թիւրքիան մի ողորմելի մնացորդ է տասնեվեցերորդ դարու սուլթանների ստեղծած պատկառելի կայսրութեան։ Նա բոլորովին անհետացել է Աֆրիկէից և Եւրոպայից և անհետանալու վրայ է Ասիայից, անգլիացի ու ռուս մեր դաշնակիցների հարուածին տակ։ Ութ տարուան ընթացքում երիտասարդ թիւրքերը կորցրին իրենց երկրի երկուերրորդ մասը... իսկ մնացորդը լաւ ձեռների մէջ է։

1908-ին, Օսմ. կայսրութիւնն Եւրոպայում ունէր 326,000 քառ. կիլոմետր տարածութիւն և 11 միլիոն ժողովուրդ։ Մի մասն այս հողերից բաղկացած էր հպատակ երկիրներից, ինչպէս օր. բուլղարական իշխանապետութիւնը, Արևելեան Ռումելին, Բոսնիա-Հերցեգովինա և Նովի-Բազարի գաւառակը, որոնք «կառավարւում էին» Աւստրո-Ունգարիայի ձեռքով։

Երիտասարդ թիւրքերը ձգտեցին Բուլղարիան հպատակ դարձնել իրենց, իսկ Բոսնիա-Հերցեգովինան ու Կրետէնը գրաւել պարզապէս։ Զեռնարկեցին գործի։ Հետևանքներն շուտով երևան եկան։

1908 թ. հոկտ. 5-ին Ֆերդինանդ Կոբուրգը անկախ յայտարարեց Բուլղարիան ու Ռումելին, որ 100,000 քառ. կիլոմետր տարածութիւն և երեք ու կէս միլիոն ժողովուրդ ունեցող մի հողամաս էր. յաջորդ օրը, հոկտ. 6-ին, Վիէննայի կառավարութիւնը իւր դիւանագիտական բոլոր շրջաններին ուղղուած մի շրջաբերականով, Հերցեգովինա-Բոսնիան կցուած յայտարարեց Աւստրո-Ունգարիոյ կառավարութեան։ Տասն օր յետոյ, հոկտ. 15-ին, Կրետէն հանդիսաւոր կերպով յայտարարեց որ միանում է Յունաստանին, որով Թիւրքիան նորից զրկուեց 51,000 քառակուսի կիլոմետր հողից և 1½ միլիոն բնակչից, այլև 3,618 կիլոմետրից և 300,000 բնակչից։

Այսքան յաջող ճանապարհի վրայ կանգնելը ցաւալի պիտի լինէր։ Եւ 1912-ին Միջերկրական ծովի կղզիներն անցան Իտալիոյ. 1913-ին երիտասարդ թիւրքերն՝ բուլղարների, սերբերի և յոյների կողմից ջախջախուած, կորցրին իրենց եւրոպական բոլոր

կալուածները, բացի Կ. Պոլսից և իւր կից շրջանակից։ Այս բանը անդարմանելի դժբաղդութիւն եղաւ այն Թիւրքիոյ համար, որի զօրքերն մի ժամանակ գրաւել էին Ռուսաստանի ամբողջ հարաւային մասը, Հունգարիան և Աւստրիոյ մի բաժինը, որ պաշարել էին Վիէննան և հասել մինչև Հաննոս գետը և այժմ անհետանում են գրեթէ Եւրոպայի քարտէզից։

Աֆրիկայում անհետացումը կատարեալ եղաւ։ Իտալիոյ դէմ մղուած պատերազմը վերջացաւ Լոզանի դաշնադրութեամբ, որով Բարձրագոյն Դուռը՝ մէկ միլիոն քառ. կիլոմետր և նոյնքան բնակչութիւն ունեցող Տրիպոլիսը զիջաւ Իտալիոյ։ Ներկայ պատերազմի ընթացքում Եգիպտոսը բոլորովին անջատուեց Թիւրքիայից։

Միայն Ասիան էր մնում Թիւրքերի ձեռքը և յոյս էր տածւում, որ նրանք պիտի աշխատէին իրենց կալուածների այս յետին կտորը պահել... Բայց նրանք համաձայնեցին գերմանացոց հետ և այդ պատառն էլ դարձրին Վիլհելմի գաղութներից մէկը։

Եւ այսօր, շատ մօտ է, որ նա էլ ընկնի համաձայնութեան պետութիւնների ձեռքը։ Կովկասի ռուսական բանակը գրաւեց Հայաստանը, Եգիպտոսի անգլիական բանակն սպառնում է Սիրիայի շրջանին, Միջագետքի անգլիացոց զօրքը գրաւեց Բաղդադն և Պարսկաստանի ռուսական բանակն շտապում է իւր կարգին դէպի Եփրատի ու Տիգրիսի ընդարձակ հովիտները։ Ամեն օր Սուլէյմանի կայսրութիւնը փոքրանում է և պատերազմի տաքութեամբ գոլորշանում։

Սարսափելի մի պատասխանատւութիւն է ծանրանում ներկայիս այն վոհմակի վրայ, որ յեղափոխութեամբ և ոճրագործութեամբ, Օթմանլի իշխանութիւնը բռնութեամբ ձեռքն ու ոտքը կապած վիճակով Թիւրք ժողովուրդը յանձնեց Բեռլինի արիւնախում բռնապետին։

Նրանք գերեզմանափորներ եղան այն պետութեան, որ մի ժամանակ այնքան վիթխարի էր։

Թարգմ. Մ. Թ.

«Le Matin» (№ 12068)

# Համաշխարհային պատերազմը

Ռուսաց արեւմտեան ճակատում շաբաթուայ ընթացքում տեղի են ունեցել առաջամաս զօրքերի մանր ընդհարումներ միայն։

Կովկ. ճակատում՝ ապրիլի 28-ին ռուսներն նորից անցան Դիալա գետը Զաւմուրի մօտ, Խանիքենից հիւսիս, բայց հանդիպելով Թիւրքական մեծաքանակ ուժերի՝ ստիպուած եղան յետ դառնալ։

Ֆրանս-անգլիական ճակատ. Շաբաթուայ ընթացքում այս ճակատի վրայ կռիւները ուժգին կերպով առաջ տարուեցին։ Գերմանացիք ռուսական և այլ ճակատներից քաշելով իրենց ուժերի մեծ մասը կենտրոնացրին այս ճակատում՝ ֆրանս-անգլիական բանակի հերոսական առաջխաղացութիւնը դադրեցնելու համար։ Թշնամին ապրիլի 28-ին ուժգին կերպով յարձակուեց Բիւլլեկուրի ուղղութեամբ և Հինդենբուրգի գծի վրայ, բայց անյաջողութեան մատնուելով յետ շպրտուեց։ Իպրի շրջանում անգլիացիք յաջող յարձակում են գործում և գերիներ առնում։ Մայիսի մէկից անգլիացիներն սկսել են առաջ շարժուել Սկարպա գետի ուղղութեամբ, գրաւելով Ռէ գիւղը։

Մինչև ապրիլի 28-ը անգլիացիք ու ֆրանսացիք գերի են վերցրել 49,579 հոգի, որից 976 սպայ, 444 հրանօթ, 386 խրամատային մորտիր, 943 գնդացիր և ուրիշ բազմաթիւ պատերազմական աւարներ։

---

# Ներքին Տեսութիւն

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

### ԱՆՑՔԵՐԸ ՊԵՏՐՈԳՐԱԴՈՒՄ

### ԱՌԱՋԻՆ ՊԵՏ. ԴՈՒՄԱՅԻ ԲԱՑՄԱՆ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Ապրիլի 27-ին Պետրոգրադում կատարուեց հանդիսաւոր կերպով առաջին Պետական Դումայի բացման տարեդարձը։ Բոլոր նստաշրջանների պատգամաւորները, առանց խմբակների բաժանուելու, բռնել էին իրենց տեղերը։ Ներկայ էին նաև ճակատի համագումարի պատուիրակներն և բան. ու զին. խորհրդի Գործադիր Կոմիտէի անդամները։ Դիւանագիտական օթեակում տեղ էին բռնել դաշնակից պետութիւնների ներկայացուցիչները։ Ժամանակաւոր Կառավարութեան անդամները նստած էին պատգամաւորական աթոռների վրայ։

Առաջին անգամ խօսք է առնում Պետ. Դումայի նախագահ Ռոձեանկոն, որ առաջարկում է յոտնկայս յարգել մեռած պատգամաւորների յիշատակը. ապա մի պատմական ակնարկ է ձգում Դումայի պատմութեան վրայ և պատկերացնելով Ռուսաստանի դիրքն իւր դաշնակիցների և ընդհ. աշխարհի հանդէպ, կոչ է անում յանուն այդ դիրքի անսասանութեան յարգել իրենց խոստումը և շարունակել պատերազմը մինչև պատերազմի վախճանը։

Ռոձեանկոյից յետոյ խօսում է երկրորդ Դումայի նախագահ Գոլովինը, որ յորդորում է շուտով գումարել Սահմանադիր Ժողովը, որպէսզի երկրի ձեռք բերած թանկագին ազատութիւնը դրուի իրաւական աւելի հաստատուն ու ամուր հողի վրայ։

Ապա յաջորդաբար խօսք են առնում իշխ. Լվովը, Պետ. Դումայի անդամները, Գուչկովը, Կերենսկին և ուրիշներ։

### ԳՈՒՉԿՈՎԻ ՀՐԱԺԱՐԱԿԱՆԸ

Մայիսի 2-ին զինուորական նախարար Գուչկովը հրաժարական ներկայացրեց Ժամ. Կառավարութեան մինիստր-նախագահին։ Նրա փոխարէն ենթադրւում է, որ Կերենսկին պիտի նշանակուի։

Գուչկովի հրաժարականը բղխում է զինուորական այն ծանր ու անպատասխանատու կացութիւնից, որում ապրում է ներկայումս Ռուսաստանը։

Այդ դրութեան մասին Գուչկովը զօրաճակատի պատգամաւորների համագումարում տալիս է մանրամասն ու բնորոշ բացատրութիւններ և կոչ է անում, որ երկիրը պէտք է ծայրայեղութիւնից դուրս հանել, դեռ նոր գործի սկսած կառավարութիւնից չպահանջելով այն, ինչ որ անկարելի է նոյնիսկ ամեն ազատ երկիրների համար։

### ՄԻԼԻՒԿՈՎԻ ՀՐԱԺԱՐԱԿԱՆԸ

Մայիս 3-ին Ժամանակաւոր Կառավարութեան գիշերուայ նիստին Միլիւկովը հեռացաւ նախարարների նիստի դահլիճից, յայտնելով, որ թողնում է արտաքին գործոց նախարարի պաշտօնը և բոլորովին դուրս գալիս նախարարական կազմից։ Ժամանակաւոր Կառավարութեան անդամները առաջարկեցին որ նախարար-նախագահ իշխ. Լվովը վարէ արտաքին գործոց նախարարութիւնը, բայց սա մերժեց բացարձակապէս, յայտնելով որ ինքը այդ գործին ձեռնհաս չէ համարում իրեն։ Այնուհետև Ժամ. Կառավարութեան անդամների մեծամասնութիւնը հնարաւոր համարեց արտաքին գործոց նախարարութեան պաշտօնը յանձնել Տերեշչենկոյին։ Զինուորական և ծովային նախարար նշանակւում է Կերենսկին։

# ՍԱՀՄԱՆԱԴԻՐ ԺՈՂՈՎԸ *)

Այդ բոլորը նկատի ունենալով պարզւում է՝ թէ որքան կարևոր հարց է Սահմանադիր Ժողովի կազմի հարցը։ Որպէսզի դա հասարակութեան մեծամասնութեան—աշխատաւոր ու ճնշուած ժողովրդի շահերի ու ցանկութիւնների արտայայտիչը հանդիսանայ, դրա ընտրութիւնները պէտք է կատարուեն բոլորովին ազատ քաղաքական պայմաններում և կատարեալ ընտրական իրաւունքներով։ Այսինքն ժողովուրդը պէտք է մինչև Սահմանադիր Ժողովը գոնէ հաստատ պահի իւր ձեռք բերած քաղաքական և քաղաքացու ազատութիւնները—գումարումների, շարժուելու, խօսքի, մամուլի ազատութիւնը, անձի անձեռնմխելիութիւնը և ընտրական իրաւունքը։ Առանց այդ բոլորի Սահմանադիր Ժողովը երբէք էլ ցանկալի արդիւնք տալ—Ռուսաստանում ժողովրդապետական կարգեր հաստատել չի կարող։ Առանձնապէս ժողովրդական-սոցիալիստական կուսակցութիւնները պէտք է ազատութիւն և հնարաւորութիւն ունենան և աշխատեն որքան կարելի է աւելի շատ անդամներ ուղարկել Սահմանադիր Ժողով քան բարձր և հարուստ դասակարգերը։

Սահմանադիր Ժողովի կազմից յետոյ երկրորդ կարևոր խնդիրը նրա անդամների թուի խնդիրն է։ Սահմանադիր Ժողովը իբրև առաջին և հիմնադիր ժողով ընդհանրապէս աւելի բազմամարդ է լինում՝ քան սովորական օրէնսդիր ժողովը—պարլամենտը։ Քանի որ Հիմնադիր Ժողովը աւելի ընդհանուր, կարևոր, հիմնական կամ տևական նշանակութիւն ունեցող հարցեր է որոշելու, ուստի և ցանկալի է, որ նա ըստ հնարաւորին բազմամարդ լինի, որպէսզի կարողանայ Ռուսաստանի բազմամիլիոն ժողովուրդների կամքի—շահերի և կարիքների արտայայտիչը հանդիսանալ։

Սահմանադիր Ժողովի բազմամարդ լինելը կարևոր է դառնում մանաւորապէս, երբ նկատի ենք ունենում այն հանգամանքը, որ Ռուսաստանը ունի թէ տեղագրական, տնտեսական և թէ կուլտուրական տեսակէտից այլազան ժողովուրդներ։ Սրանք էլ պէտք է ըստ հնարաւորին շատ ներկայացուցիչներ ունենան իրենց ուրոյն շահերն ու իրաւունքները լաւ պաշտպանելու համար։

Երրորդ կարևոր հարցը—Սահմ. Ժողովի գումարուելու ժամանակի հարցն է։—Ռուսական Մեծ Յեղափոխութիւնը միայն իւր յեղաշրջման գործողութեամբ էր կարճատև։ Այդ, իրօք, մի երկարատև հասարակական պրոցէսս է։ Դա կազմուած է յեղաշրջման գործողութիւնից, ժամանակաւոր կառավարութիւնից և Սահմանադիր Ժողովից։ Ուրեմն դա դեռ չի վերջացել, այլ շարունակւում է և հետզհետէ ամրացնում է նոր կարգի հիմունքները։ Սահմանադիր Ժողովը Յեղափոխութեան կատարման պրոցէսսի վերջին, հաստատուն շրջանը պէտք է լինի։ Քանի Սահմ. Ժողով չկայ և իւր շինարար աշխատանքը չէ կատարում բնական պայմաններում՝ Յեղափոխութեան գործը չի կարելի վերջացած համարել։ Որքան որ դա շուտ գումարուի և երկրի համար հաստատուն կարգ հաստատուի՝ այնքան լաւ։ Գումարման ժամի յետաձգման պատճառները մենք գիտենք. դրանք են՝ արտաքին, պատերազմական աննպաստ հանգամանքներ և նախապատրաստական աշխատանքներ։ Բայց և այնպէս դա շատ էլ յետաձգուել չի կարող։ Անցման շրջանները վտանգաւոր շրջաններ են։ Մանաւանդ այսպիսի մի լայնածաւալ և քայքայուած պետութիւն կարիք ունի օր առաջ որոշ և հաստատուն կարգ ստեղծելու։ Ժամանակաւոր Կառավարութիւն կոչուածը մի շատ անորոշ մեծութիւն է, մի երկսայրի սուր, մի երկդիմի կառավարութիւն ու քաղաքականութիւն։

*) Տես «Համբաւաբեր» № 16։

Չորրորդ մեծ հարցը, որից և կախուած Սահմ. Ժողովի գումարման ժամանակը,—դրա համար կատարելիք նախապատրաստական բարդ աշխատանքներն են։ Ամենամեծ հարցերը երկիրը ընտրական շրջանների բաժանումն է և առհասարակ ընտրական իրաւունքի մշակումն։ Ընտրական օրինաւոր շրջանների բաշխումը ահագին դժուարութիւն է առաջ բերում շնորհիւ այն հանգամանքի, որ ընտրողների, քաղաքացիների մի ահագին թիւ այժմ կենտրոնացած է ճակատներում։ Վերամշակման պէտք է ենթարկուի և ընտրական իրաւունքը։ 1905—07 թ. ընտրական իրաւունքները շատ են թերի ու անբաւարար բազմամիլիոն ժողովրդի կամքի արտայայտիչ Սահմանադիր Ժողով գումարելու համար։

Այս և այլ նախապատրաստական աշխատանքներ և արտաքին հանգամանքներ յետաձգում են Սահմանադիր Ժողովի գումարումը։ Բայց նա շատ ուշանալ չէ կարող։ Նրա ըստ հնարաւորին շուտափոյթ գումարումն ընդհանուր պետական և ժողովրդական հրամայական պահանջ է։ Երկիրը կարիք ունի որոշ պետական ձևի, հիմնական օրէնքների և հաստատուն իրաւակարգի։

Մենք էլ պէտք է պատրաստուենք այդ Ժողովի համար։ Մենք էլ չպէտք է ուշանանք։ Սահմ. Ժողովը ամիսների գործ է։ Գիտակից քաղաքացին պէտք է ոչ մի օր ու ժամ չկորցնէ պատրաստուելու Սահմանադիր Ժողովի համար։

Վ. ԽՈՐԷՆԻ

# ՔԱՌԱՆԴԱՄ ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ԻՐԱՒՈՒՆՔ *)

## Բ.

Բացի ընդհանուր ձայնատուութիւնից ընտրական իրաւունքը պէտք է լինի նաև հաւասար։ Այդ նշանակում է, որ ամեն մի քաղաքացի՝ ազգաբնակութեան որ խաւին էլ որ պատկանելիս լինի, ընտրութիւնների ժամանակ միմիայն մի ձայնի իրաւունք ունի և ձայները համազօր նշանակութիւն ունին։ Քանի որ իրաւունքը պատկանում է անձին և ոչ թէ նրա ծագմանը, հարստութեան, կրթութեան և այլն, պարզ է ապա ուրեմն, որ ոչ մի սահմանափակում այդ ուղղութեամբ չի կարող իրաւացի լինել։ Այն բանաձևը (ֆորմուլան), թէ հարուստներին կամ նշանաւոր ծագում ունեցողներին է յատուկ երկրի քաղաքական կեանքի տնօրինութիւնը, պէտք է արդէն ջախջախուած համարել, քանի որ իւրաքանչիւր անհատ, անկախ իւր կարողութիւնից և կոչումից հաւասարապէս է ենթարկուած պետական օրէնքներին և հաւասարապէս է տանում օրէնքի լուծը։ Միւս կողմից միանգամայն ջնջելով կոչումների (званіе) տարբերութիւնը, վերանում է նաև դրա վրայ հիմնուած արտօնութիւնները։

Սակայն հաւասար ընտրողական իրաւունքը կրճատելու համար տիրող դասերը հիմնել և հիմնում էին մի շարք սահմանափակումներ։ Նախ ձայների բազմութիւնը, այսինքն մի անձ նայած իւր կարողութեան, կրթութեան և ծագման ունէր մի քանի ձայն, այն ժամանակ երբ մի ուրիշը օգտւում էր միայն մի ձայնի իրաւունքով։ Բարոնի կամ կոմսի (գրաֆ) կամ խոշոր արդիւնաբերողի 3 ձայնի հանդէպ մանր քաղաքացին օգտւում էր միայն մի յայտնի իրաւունքով։

Բացի ձայների բազմութիւնից, հաւասարութեան սկզբունքը խախտելու համար տիրող դասերը ստեղծել էին մի այլ ձև, այն է՝ ընտրող կուրիաներ կամ խմբակցութիւններ։ Այս դէպքում երկու խմբակի տրւում էր հաւասար քանակութեամբ ձայներ, չնայելով որ այդ խմբակցութիւնները տարբեր քանակութեամբ անդամներ ունին։

*) Տես «Համբաւաբեր» № 16։

Այս դէպքում, երբեմն մի երկու տասնեակ վաճառականներ կամ խոշոր հողատէրեր ընտրում են այնքան պատգամաւոր, որքան հարիւր հազարաւոր ստոր դասերի ընտրողները. օրինակ Աւստրիայում շնորհիւ կուրիական սիստեմի մի մի պատգամաւոր են ընտրում 64 հողատէր, 26 խոշոր առևտրական, 4193 քաղաքացի, 12,290 գիւղական հասարակութիւնը, նոյնիսկ 69,563 այլ դասակարգի ընտրողներ։ Ակներև է այն խոշոր անարդարութիւնը, որ բղխում է ձայների անհաւասար բաշխումից։ Նման անարդարութեան կը հանդիպենք մենք, եթէ իւրաքանչիւր նահանգին մեզանում տրուէր միևնոյն քանակութեամբ պատգամաւորներ ընտրելու իրաւունք։ Ընտրողական հաւասար իրաւունքը պահանջում է որ ոչ մի ընտրողի ձայն չխեղդուէր և ամեն ոք ունենար միայն մի յայտնի իրաւունք։ Այս բանն իրագործելու համար անհրաժեշտ է, որ իւրաքանչիւր ընտրութեան դէպքում երկիրը բաժանուէր նոր ընտրողական շրջանների, ուշադրութեան առնուէր շրջանի ազգաբնակութեան թիւը և հաւասար թուով ազգաբնակութեան տրուէր հաւասար պատգամաւորներ ընտրելու իրաւունք։ Այս սկզբունքով պէտք է կատարուի ընտրութիւնը ապագայ Սահմանադիր ժողովի պատգամաւորների և այլ բոլոր ընտրութիւնները։

Ընդհանուր ընտրողական իրաւունքը պէտք է պատկանի ամենքին հաւասար կերպով։

---

Ընդհանուր և հաւասար ընտրողական իրաւունքը կը հասնի իւր նպատակին, երբ ընտրող անձը օգտուի այդ իրաւունքով ուղղակի։ Ուրիշ խօսքով ընտրողական իրաւունքը պէտք է լինի նաև ուղղակի։ Այդ նշանակում է, որ հակառակ աստիճանական ընտրութիւնների իւրաքանչիւր ոք ինքն է ընտրում իւր պատգամաւորին անմիջապէս։ Իւրաքանչիւր ընտրողի համար պէտք է պարզ լինի, թէ ում է տալիս իւր ձայնը և դրա հետ միասին իւր բախտի տնօրինութիւնը, պէտք է գիտենայ թէ ով կարող և ընդունակ է պաշտպանելու իւր շահերը, որպէս զի միայն նրան տայ իւր ձայնը։ Աստիճանական ընտրութիւնների դէպքում, այսինքն այն ժամանակ երբ ընտրողները ընտրում են մի մարմին, այս մարմինը իւր հերթին մի այլ և միայն վերջին մարմինը ընտրում է պատգամաւոր, այս դէպքում ընտրողի ձայնը կարող է յանկարծ տրուած լինել մէկին, որին ընտրողը ոչ ճանաչում է և ոչ էլ գիտէ թէ նա կը պաշտպանէ՞ արդեօք իւր շահերը։ Նոյն իսկ աւելին՝ աստիճանական ընտրութիւնների դէպքում ընտրուածը կարող է իւր ընտրողների շահերին բոլորովին ներհակ շահեր ունենալ։ Գոյութիւն ունեցող ձևերը, երկաստիճան, եռաստիճան, քառաստիճան և այլ ընտրութիւնները մի նպատակ ունեն միայն, ըստ կարելւոյն ընտրողին հեռացնել ընտրուողից, որպէս զի այս վերջինը լինի այն մարդը, որ ընդունած կը լինի պաշտպանել տիրող դասերի շահերը։ Մինչդեռ ընտրողները շահագրգռուած են իրենց շահերի պաշտպան ընտրել և դրա համար ևս պէտք է իրենց ձայնը անմիջապէս նրան տան, ով ընդունակ և կարող է պաշտպանելու իրենց իրաւունքները։ Ընտրուածը պէտք է ուղղակի ընտրուի ընտրողներից։

---

Քառանդամ ընտրութիւնների վերջին պահանջն է գաղտնի քուէարկութեան սկզբունքը։ Տնտեսական և սոցիալական ներկայ իրաւակարգի շնորհիւ ազգաբնակութեան խոշոր մեծամասնութիւնը և բանուորութիւնը և մանր գիւղացութիւնը իրաւապէս ազատ լինելով, ազատ չէ տնտեսապէս, այլ կախումն ունի աւելի փոքրամասնութիւն կազմող դասից։ Շնորհիւ այդ հանգամանքի նա հնարաւորութիւն չունի բացարձակ կերպով օգտուելու իւր քաղաքական բոլոր իրաւունքներից։ Մանաւորապէս ընտրութիւնների ժամանակ բանուորը կամ գիւղացին միանգամայն գործարանատիրոջ կամ կալուածատիրոջ ճնշման տակ են։ Նոքա ստիպուած են լինում յաճախ իրենց ձայնը տալու կալուածատիրոջ կամ գործարանատիրոջ թեկնածուին, չնայելով որ սա պէտք է պաշտպանէ ոչ-բանուորների և ոչ-գիւղացիների շահերը. իսկ բացարձակօրէն ընտրել իրենց թեկնածուին նոքա դժուարանում են, քանի որ այդ կարող է առիթ ծառայել բանուորին իւր օրական վերջին ապրուստից զրկուելուն։ Գործարանատէրը կամ կալուածատէրը տեսնելով, որ աշխատաւորը չի հպատակւում իրենց պահանջներին, անմիջապէս կարող են նրան գործից հեռացնել և զրկել նրան ապրուստից։

Ահա այս և նման պայմանները ի նկատի առնելով ընդհանուր, հաւասար և ուղղակի ձայնատուութեան հետ միասին պահանջւում է և գաղտնի ձայնատուութեան սկզբունքը։ Այս դէպքում բանուորը կամ գիւղացին այլևս երկիւղ չունի աշխատանքից զրկուելու։ Ընտրողը ազատօրէն մտնում է ընտրողական սենեակը և ներփակ ծրարով ձգում է իւր քուէն ընտրողական տուփի մէջ, և այսպիսով զրկում է իւր գործարանատիրոջը՝ հետևելու հնարաւորութիւնից թէ ում տուեց նա իւր քուէն, իւր, թէ՞ գործարանատիրոջ թեկնածուին։ Ընտրութիւնները պէտք է ղեկավարի բոլոր կուսակցութիւններից ընտրած առանձին յանձնաժողովը, որը մշակում է նոյնիսկ ծրագիրների ձևը, որպէսզի միանգամայն գաղտնի մնայ իւրաքանչիւր ընտրողի ձայնը։ Միայն այս ձևով կազմակերպուած ընտրութիւններից յետոյ կարելի է ապահով լինել, երբ գործի գլուխ կանգնեն հասարակութեան սիրելի և գործունեայ մարդիկ։

Ամփոփելով մեր բոլոր պահանջները, որոնց պէտք է գոհացում տան լաւ կազմակերպուած ընտրութիւնները, մենք տեսնում ենք, որ ընտրութիւնները կարող են համապատասխանել ժողովրդի շահերին միայն այն դէպքում, երբ կազմուած են ընդհանուր եւ հաւասար ընտրողական իրաւունքի սկզբունքով ուղղակի եւ գաղտնի ձայնատուութեամբ։ Ով այսպիսի ընտրութիւնների կողմնակից է, նա անպայման ժողովրդի բարեկամն է և չի կամենում իշխանութիւնը թողնել տիրող դասակարգի ձեռքին։ Ժողովուրդը արեան գնով պէտք է շահագրգռուած լինի այս սկզբունքների պաշտպանութեամբ, որովհետև սրանք դիւրացնում են ձեռք բերելու քաղաքական իշխանութիւն, որ պէտք է նպաստէ ժողովուրդների քաղաքական նպատակների իրագործման։

Մ. ՍԱՀԱԿԵԱՆ

---

## ՄԱՀՄԵԴԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

Կովկ. մահմեդականների Բագուի համագումարը միաձայն որոշեց.

ա) Ռուսաստանի ապագայ քաղաքական կազմը պէտք է լինի ռամկավար հանրապետութիւն՝ դաշնակցական սկզբունքներով, որը միայն հնարաւորութիւն է տալիս լայնօրէն ապահովելու մահմեդական ժողովուրդների ազգային շահերը։

բ) Ընդունելով, որ իսլամական կրօն դաւանող բոլոր ժողովուրդներն իրար հետ կապուած են հոգևոր-կուլտուրական կեանքով, անհրաժեշտ է համարւում Ռուսաստանում առաջ բերել ընդհ. մահմեդականութեան մի կենտրոնական օրգան օրէնսդրական գործօններով, հոգևոր-կուլտուրական միութիւնն ապահովելու համար։

գ) Համագումարը անհրաժեշտ է գտնում ամեն կերպ աջակցել և պաշտպանել Ժամանակաւոր Կառավարութիւնն իւր նոր կարգերով այնչափ, որչափ նա հետևողականօրէն կը ձգտի իրականացնել բան. և զին. խորհուրդների համաձայնութեամբ մարտի 6-ին յայտարարած լոզունգները։

դ) Համագումարը քննութեան առնելով իւր վերաբերմունքը դէպի ներկայ պատերազմը, որոշեց ամբողջովին յարել Ռուսաս-

տանի դեմոկրատիային, որը պատերազմի վախճանը պահանջում է առանց գրաւումների և տուգանքի:

ե) Ամեն կերպ իրականացնել դեմոկրատիկ սկզբունքների վրայ դրուած Ռուսաստանի բոլոր ազգութիւնների ազգային-քաղաքական իդէալները, մասնաւորապէս կովկասեան ազգութիւնների վերաբերմամբ համագումարն անհրաժեշտ է գտնում սերտ ու համերաշխ յարաբերութիւն պահպանել բոլորի հետ, նպատակ դնելով իրականացնելու կեանքի մէջ փոխադարձ համերաշխութիւն և յարգանք՝ հիմնուած դեմոկրատիկ սկզբունքների վրայ։

# Գաւառ

*Քիշնեւ.*—Մարտի 4-ին վախճանեցաւ Ն.-Նախիջ. և Բեսարաբիայի հայոց թեմի առաջնորդ Տ. Ներսէս արքեպիսկոպոս Խուդավերդեան։ 12-ին հողին յանձնուեցաւ Քիշնևի Հայոց եկեղեցու գաւթում։

Հանգուցեալ առաջնորդը ս. էջմիածնին թողել է 10,000 ռ. կանխիկ դրամ, 10,000 ռ. բանկային տոմսեր և 20,000 ռուբլու այլ և այլ իրեր։

Թաղման երեկոյեան առաջնորդարանում կոնսիստորիայի նախանդամ Մեսրոպ վարդապետ Մաքսուդեանի նախագահութեամբ տեղի ունեցաւ թաղման առթիւ ժողոված քահանաների ժողով։ Բոլոր քահանաների կողմից շեշտուեցաւ ազգային-եկեղեցական ընդհանուր ժողովի գումարման հրամայողական պահանջը։ Տեսնել Յուսիկ վարդապետ Զոհրաբեանին Ն.-Նախիջ. և Բեսարաբիայի լայնածաւալ թեմի առաջնորդ—այդ էր ներկայ գտնուած քահանաների համարեա միաձայն ցանկութիւնը։

Ե. քահ. ԱՊՐԻԼԵԱՆ

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ

29-ին ապրիլի կայացաւ Հ. Կ. Կ.-ի հերթական նիստը, նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, ուր եղան հետևեալ զեկուցումներն ու որոշումները.

ա.— պ. Նախագահը զեկուց, որ Լոնդոնից օր. Ռոբինզոնից ստացել է 3320 ռ., յօգուտ Երևանի Վասպուրականի Կանանց Միութեան։ Որոշուեց Խորէն եպ.-ի միջոցով փոխադրել այդ գումարը ըստ պատկանելոյն։ Յօգուտ Հ. Կ. Կոմիտէի ստացուել է 5000 ռ. Մանչեստրից։

բ.— Կոմիտէի Տրապիզոնի ներկայացուցիչ հայր Մեսրոպ ա. ք. Մելեանը տուեց մի համառօտ զեկուցում Տրապիզոնում գոյութիւն ունեցող գաղթականական մարմինների, մասնաւորապէս Հայկ. Կոմիտէի, Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղի, որբանոցի և գաղթ. դպրոցի մասին։

Հայր Մելեանցի զեկուցումն ընդունուեց շնորհակալութեամբ և որոշուեց փոխադրել Տրապիզոնի որբանոցը Սուխում և Բաթում, ի նկատի առնելով այն տեղի կեանքի անտանելի թանգութիւնը։

գ.— Տաճկահայերի մայիսի 1-ին կայանալիք համագումարի առթիւ Կոմիտէն որոշեց ողջոյնի հեռագիր ուղարկել Երևան, յոյս յայտնելով, որ համագումարի արդիւնաւէտ աշխատանքը տաճկահայերի ծանր կեանքի թեթևացման գրաւականն է լինելու։

——

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.—

—պ. Պետրոս Տաքաղեանից յօգուտ տաճկահայ որբերի 100 ռուբլի, այդ գումարը գոյացել է «Էրզրումի սրճարան»-ի յօգուտ տաճկահայերի յատկացրած տոկոսներից։

—պ. Կարապետ Շիրինեանից յօգուտ «Շիրինեան» գրադարա՛ի 150 ռ.։

—պ. Գասպար Յովհաննիսեան Տէր-Մարգարեանից յօգուտ Համբաւաբեր-ի տարածման 100 ռ.։

—Թիֆլիսի ծխախոտի գործարանատէրերից հանգ. Միքայէլ Բողարջեանի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն յօգուտ ճաշարանի 500 ր.։

—պ. Յովսէփ Յովսէփեանից յօգուտ «Համբաւաբեր»-ի 100 ր.։

—Թեմիր Խան-Շուրայից Լիւդմիլա Վլադիմիրովնա Կոմարովսկուց յօգուտ փախստականների 10 ր.։

## ՃԻՒՂԵՐ

Օշականի հասարակութիւնը դիմելով Խորհրդին խնդրել է թոյլ տալ բանալ ընկերութեան նոր ճիւղ։ Խորհուրդը յարգեց նրանց խնդիրը։

—Շուլաւէրի ճիւղի վարչութիւնը դիմելով Խորհուրդին խնդրել է տալ մշտական անդամութեան մրցագրեր հետևեալ անձերին, որոնցից ստացուած է յօգուտ ճիւղի 100-ական ռուբլի. — Գէորգ Մովսիսեան Զիլինգարեանին, Յովհաննէս աւագ քահ. Մարտիրոսեանին, Արտաշէս Յովսէփեան Երիբէգեանցին։

Խորհուրդը որոշել է տալ խնդրած մրցագրեր նաև՝

*Ցխինվալի* ճիւղից՝ օր. Մարիամ Պետրոսեան Ամիրաղեանին, տիկ. Քեթևան Օհանեան Մեքուռնութեան ամուսիններին և Օհաննէս Ստեփանեանին։ *Նուխու* ճիւղից՝ Մանուէլ Գէորգեանին և Մկրտիչ Գէորգեանին։

## ՊԱՐԵՆԱԽՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏ. ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Ապրիլի 26-ից—մայիսի 8 ը

*Ալիւր* ուղարկուած է Ալէքսանդրապոլ 2 վագոն, Երևան՝ 2, Ղարաքիլիսա՝ 1 Դիլիջան՝ 1 և Ջուղա՝ 2, ընդամենը 8 վագոն։

*Ալաշկերտ* ուղարկուած է 4 վ. *ցորեն*։

*Շաքար* ուղարկուած է Նոր-Բայազէդի և Ներքին Ախտայի պահեստներին 400 պ. և Աշտարակ՝ 500 պ., ընդամենը 900 պ.։

*Սապոն* ուղարկուած է Նոր-Բայազէդ 60 պ., Ելենովկա՝ 50 պ., Ներքին Ախտա՝ 60, Ղարանլուղ՝ 60, Իգդիր՝ 200, Վաղարշապատ, Աշտարակ և Ղուրդուղուլի 50-ական պ., ընդամենը 580 պարկ։

*Աղ* ուղարկուած է Աղստաֆա 2 վ., Սարիղամիշ՝ 1, Գանձակ՝ 1 և Ղարաքիլիսա՝ 1, ընդամենը 5 վագոն։

# Քրոնիկոն

Տպարանի փոխադրութեան պատճառով «Համբաւաբեր» ի ներկայ համարը լոյս տեսաւ ութ երեսից բաղկացած:

——

*Հայոց թատրոն.* Մայիսի 12-ին թատրոնի առթիւ Շիրվանզադէի նախագահութեամբ կազմուած ժողովը երկար խորհրդածութիւնից և վիճաբանութիւնից յետոյ՝ որոշեց, պ. Ղուլեանի առաջարկութեամբ, ընտրել մի յանձնախումբ, լիազօրելով նրան՝ բանակցութիւն վարելու Արտիստ. ընկ. թատրոնի տիրոջ հետ՝ շէնքը գնելու համար։ Իսկ բանակցութիւնից յետոյ հրաւիրել ժողով, միջոցների կամ նոր թատրոն շինելու մասին մտածելու

համար։ Ցանձնախումբը կազմուեց հետեւեալ անձերից՝ պ. պ. Յով. Թումանեան, Մուրինեան, Յ. Տէր-Դաւթեան, Ալ. Խատիսեան, Խ. Ափրիկեան, տիկ. Մայսուրեան, Յ. Աբէլեան, Շիրվանզադէ, Խ. Խաչատրեան, Հ. Առաքելեան, իշխ. Բ. Արղութեան-Երկայնաբազուկ։ Որոշուեց խնդրել նաև կոմիսար Միք. Պապաջանեանին, որ մասնակցէ յանձնախմբին։

—

Կորին վարդապետն ամսիս 3-ին Սիբիրիայից վերադարձաւ Թիֆլիս։

—

Մայիսի 1-ից փակուեց Կ. Հ. Բ. Ը-թեան աշակերտական ճաշարանը և կը վերաբացուի առաջիկայ սեպտեմբերից։

—

«Անահիտեան» գրադարաններից մէկը ուղարկուած է նուէր Աստապատ գիւղի հասարակութեանը։

—

«Հասկեր» անունով սպառողական ընկերութիւն է կազմուել, որ մօտ օրերս Հաւլաբարում խանութ և փուռ է բանալու։

—

Համակովկասեան կօօպերատիւների համագումարը կայանալու է ամսիս 20—25։

—

Կ. Հ. Բ. Ը-թեան աշակերտական ճաշարանից տրուած է 5654 ճաշ։

—

Ապրիլի 30-ին վախճանուեց երիտասարդ ճարտարապետ Քրիստափոր Տէր-Սարգսեանը։

—

Անդրկովկասեան կոմիսարները հրաժարեցրել են գեներալ Վ. Ա. Թամամշեանին փախստականների գլխաւոր լիազօրի պաշտօնից և նրա տեղ նոյն գործի համար կոմիսարներ են նշանակել Խոսրով փաշա Բէկ-Սուլթանով և Սիրական Տիգրանեան։

—

Դաշնակցութեան Թիֆլիսի կենտրոնական կոմիտէն Յովնանեան դպրոցում բաց է արել պրոպագանդայի դասընթացներ, որտեղ դասախօսութիւնները տեւելու են մի ամիս։

—

Կանանց բարձրագոյն դասընթացների հայ ուսանողուհիների միութիւնը կազմակերպել է խմբակներ քաղաքական հասարակական գործերին մասնակցելու համար։ Նոյն միութիւնը որոշել է մասնակցել հայ ուսանողների համառուսական համագումարին, որի համար ներկայացուցիչներ են ընտրուել օր. օր. Ա. Մանդինեան, Ն. Թումանեան և Լ. Դաւթեան։

—

Թիւրքիայից գրաւած վայրերի նահանգապետի տեղ Անդրկովկասեան առանձին կոմիտէն նշանակել է կոմիսար Պետական Դումայի անդամ Իւանիցկուն։

—

Կ. Հ. Բ. Ը-թեան դահլիճում կայացաւ հայ ճարտարապետների, արուեստաւորների և տեխնիկների ժողով, որտեղ որոշուեց հիմնել «Հայկական ընկերութիւն», որի նպատակն է լինելու՝ 1) տարածել արուեստական գիտելիքներ, 2) արուեստական օգնութիւն և 3) երկրի ուսումնասիրութիւնը արուեստական տեսակէտից։

—

Վրաց դերասանների համագումարը բացուեց ապրիլի 30-ին, որը զբաղուեց արհեստակցական միութիւն կազմելու խնդրով։

—

Ամենայն Հայոց Կաթողիկոսը մի կոնդակով ապրիլի 7-ից վերականգնել է կանանց իրաւունքը՝ տղամարդկանց հաւասար մասնակցելու եկեղեցական-հասարակական գործերին, ընտրելու և ընտրուելու։ Նոյն կոնդակով յայտարարում է, որ այսուհետև առաջնորդները, փոխանորդները և այլ հոգևոր պաշտօնեաները ընտրութեամբ են կարգուելու և յանձնարարում է ձեռնարկել թեմական ժողովների ու թեմական խորհուրդների ընտրութիւնը։

—

Թիֆլիսի հաշուապահների ը-թեան նախաձեռնութեամբ մօտ ժամանակներումս բացուել է ծառայողների բանկ, որի նպատակն է ծառայել պրոլետարիատին։ Բանկի անդամներ կարող են լինել միմիայն ռոճիկ ստացող անձինք։

—

Կ. Հ. Բ. Ը-թեան գրադարանից ապրիլի ընթացքում տրուած է կարդալու համար 3984 գիրք, որից 2932 հայերէն և 1052 ռուսերէն։

# Արտաքին տեսութիւն

## Պ. Ա. ԿՐԱՊՈՏԿԻՆԸ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ*)

Դեռ մի տարի առաջ շատ նշաններ կային պատերազմի մօտիկութեան և տակաւին փետրուարին 1913 թուի և «Temps Nouveaux» թերթի իմ բարեկամ խմբագրին ես Բորդիգերում ապացուցանում էի, որ շատ սխալւում են այն ֆրանսացիք, որոնք դէմ են զինուորական երեք տարուայ ծառայութեան օրինագծին։

Եթէ Ֆրանսիան զինուորակոչ յայտարարէր թէկուզ մասնակի՝ պատերազմ անպատճառ կը բռնկէր։ Պատերազմը կը ծագի, ասացի ես այն ժամանակ, երբոր հունձը կսկսուի Ֆրանսիայում և Ռուսաստանում։ Նէմեցները լաւ գիտեն, որ ուրիշ ժամանակ նրանք հնար չունեն կերակրելու իրենց զօրքերը, մանաւանդ արագ յարձակուող հեծելազօրքը։ Յիշեցէք որ 1870 թուին էլ պատերազմը սկսուեց յուլիսին։

Սա շատ պարզ էր և մարդիկ, որոնք եւրոպական գործերից տեղեակ չեն և «անիծեալ» խնդիրների մասին քիչ են մտածել, կարող են գերմանական փողերով կաշառուած թերթերի և հեռագրական գործակալների լուրերի հիման համեմատ կարծել թէ պատերազմի պատճառն այն էր, որ Ռուսաստանը Սերբիային պաշտպան դուրս եկաւ։

Սակայն Բելգիայի պետական մարդկանցից ծվ չգիտէր, որ Գերմանիան վաղուց վճռել էր տիրելու Բելգիային, իսկ Հոլանդիային ստիպելու միանալ Գերմանիային, որովհետև Հոլանդիայի ձեռքին են Հնդկական ովկիանոսից Խաղաղ. ովկիանոս տանող ջրանցքները։ Իսկ Ֆրանսիան վաղուց վճռած էր երրորդական պետութեան վերածելու։ Գերմանական միապետութեան ամբողջ կեանքը նուիրուած էր այս նպատակին։ Այս գաղափարներով զառանցում են Գերմանիայում միլիոնաւոր թէ բուրժուան և թէ բանուորը։

### II

Սերբիան չէ պատերազմի պատճառը և ոչ Գերմանիայի վախենալը Ռուսաստանից, այլ այն հանգամանքը, որ Գերմանիայում շատ քիչ բացառութեամբ երկրի տէրը դարձած դասակարգը հարբածի պէս տարուել էր Ֆրանսիային յաղթելուց յետոյ զօրեղացած զինուորականութեան ոգով և ծովի ու ցամաքի վրայ իշխելու տենչով։ Այս դասակարգը վիրաւորական է ուղղակի համարում Գերմանիայի համար, որ նրա դրացիները խան-

*) Տես «Համբաւաբեր» № 15։

գարում են նրան յափշտակելու Միջերկրական ծովի հարուստ գաղութները, որպէս Մարօկկօ, Եգիպտոս և Ալժիր, նոյնպէս Փոքր Ասիան և Չինաստանի մի մասը, իրանից առաջ են գրաւում Պարսից ծոցը և առհասարակ խանգարում են Գերմանիային գերիշխանութիւն ստեղծելու Եւրոպայում, Ասիայում և Աֆրիկայում։ Գերմանիայի գործարանական արդիւնաբերութեան սաստիկ զարգացումը առանց գիւղացութեան տնտեսական միջոցները աւելացնելու, որ գիւղը կարողանայ սպառող շուկայ դառնալ, մանուֆակտուրային ապրանքների համար այն արդիւնքը տուեց, որ Գերմանիայի պրոլետարիայի ահագին մեծամասնութիւնը նոյնպէս վարակուեց նուաճողական ծրագրերով և երազում է ուրիշ երկիրներ տիրապետելու ձգտումով, որ Գերմանիայի ապրանքները արտահանուեն և երկրի կապիտալիզմը հզօրանայ և երկիրը փող մտնի։ Վերջ ի վերջոյ ստեղծուեց միացեալ զինուորական պետութեան գաղափարի պաշտամունք, զօրքի աստուածացումն և զարմանալի համերաշխութիւն նուաճողական ձգտումների։

Որ այս նկարագիրը ճիշտ է՝ սրա ապացոյցը հետեւեալն է. չէզոք եղէք—գրում էր Վիլհելմը Անգլիային, պատերազմի սկզբին—և ես Ֆրանսիային չեմ դիպչի Եւրոպայում՝ բացի նրա գաղութներից (Մարօկկօ, Տոնկին, Տունիս, Ալժիր)։

Միացէք ինձ հետ—գրում էր Իտալիային—և ես կը տամ ձեզ Սաւոյեան, Նիցցան և Տունիսը։

Մի խառնուէք—նա տեղեկացնում էր գաղտնի Ռուսաստանին—և կը վերջացնեմ Անգլիայի, Ֆրանսիայի և Բելգիայի հետ հաշիւներս և խոստանում էր ձեռք չը տալ ռուսներին, բայց ի հարկէ մի առ ժամանակ։

Գերմանական կանցլերը լրբաբար գրում էր Անգլիոյ արտաքին գործոց նախարարին, թէ մի՞թէ արժէ նշանակութիւն տալ մի թղթի կտորին, որով ապահովեցրած է Բելգիայի անձեռնմխելիութիւնը և այսպիսով յայտարարում է, որ Գերմանիայի համար միջազգային պայմանագրերը գոյութիւն չունեն։ Մեզ կասեն թէ Նապոլէոն Ա-ը նոյնպէս ոտնակոխ էր անում միջազգային դաշինքները։ Ճիշտ է, բայց չէ՞ որ ֆրանսիական հասարակապետութեան զօրքերը մինչև 1812 թուի պատերազմը և յետոյ նոյնիսկ նրա միապետական Եւրոպայում ոչնչացնում էին սարկութիւնը (крѣпостное) և մտցնում էին բոլորի համար հաւասարութիւն օրէնքի առաջ։ Սրա մէջ էր նրա զօրքերի ոյժը։ Ի՞նչ են բերում այժմ իրենց գերմանական բանակներն իրենց վառած քաղաքները և գիւղերը։ Ոչինչ, բացի զինուորական պետութեան իդէալ, օրէնքի ոչ մի հասկացողութիւն։ Նրանք, այո, ոչինչ չեն բերում բացի գազանացած զինուորի խրոխտանք և ոտնակոխումն ու տապալումն այն կուլտուրայի, որ Գերմանիայում ստեղծուել է մինչև 1870 թուականը։

Գ. ԵՆԳԻԲԱՐԵԱՆ

(Շարունակելի)

---

# ՑԱՃԿԱՀԱՅԵՐ

---

## «THE CHRISTIAN» Շաբաթաթերթը

Լոնդոնում հրատարակուող The Christian—Քրիստոնեայ կրօնական շաբաթաթերթի թիւ 2453, փետրուարի 1-ին P. Whitwell Wilson-ը մի համակրական յօդուած է գրել «Armenias Tragedy»—«Հայաստանի ողբերգութիւնը» վերնագրով, որի բովանդակութեան մասին մի գաղափար կազմելու համար տալիս ենք շատ համառօտ քաղուածք։

---

Փետրուարի մէկ կիրակին անգլիական և միւս յարանուանական եկեղեցիները որոշել էին Աղօթքի-օր Հայաստանի տանջուած քրիստոնեաների համար։

Գերմանիայի պատասխանատուութիւնը հայոց սոսկումներու արդէն յայտնի է Լորդ Բրայսի Կապոյտ-Գրքից։ Ամերիկեան միսիոնարները Հայաստանի մէջ այս բաները անձամբ հաստատեցին։ Թող Աստուած դատէ իւր մորթոտուած որբերի պատճառ դարձողներին։

Բայց մենք էլ յիշենք մեր պատասխանատուութիւնը։ Եթէ Անգլիոյ կառավարութիւնը ժամանակին Սան-Ստեֆանոյի դաշնագիրը չի խանգարէր, ներկայիս աւերակ դարձած հայկական գաւառները Ռուսաստանի կցուած պիտի լինէին և պիտի վայելէին կեանքի և գոյքի ապահովութիւն և կրօնի ազատութիւն։

1878-էն վերջ 1 միլիոն 250 հազար քաղաքացիներ բնաջընջուած պէտք է լինեն։

Անգիտակցաբար մենք էլ մի քիչ պատճառ դարձած ենք հայերու ներկայ ցաւերուն։

Հայերի քրիստոնէութիւնը ինքնայատուկ բնոյթ ունի, քիւրդ աւազակներով շրջապատուած և ուրիշ արգելքներ, որը աներեւակայելի է եւրոպացիներուն։

Քրիստոնեայ հայ ժողովուրդը չուզեց Փրկչի խաչը ուրանալ և Քրիստոսից չբաժանուելուն համար ջնջուեցաւ, ջարդուեցաւ։

Պէտք է խոստովանիլ որ մի շարք գերման պաստորներ այս բոլորը տեսնելով սոսկացին և երբ խաղաղութիւնը գայ, լաւ վըկաներ պիտի լինեն։

Հին ժամանակներու մարտիրոսութիւնները և հաւատաքըննութեան սոսկումները ոչինչ են հայ մարտիրոսագրութեան առջև։

Կովկաս ապաստանած փախստական հայերու համար Լոնդոնի քաղաքագլխի ֆոնդը մեծ գործեր ունի կատարելիք։ Նիւթական աջակցութիւն ցոյց տանք այս հայանպաստ ֆոնդին։

Կը յուսանք թէ մի նոր դար է բացուելու Հայաստանի համար։

Մենք պիտի ուզէինք տեսնել ամբողջ Հայաստանը Ռուսաստանի իշխանութեան տակ։ Հայերն էլ պէտք է աշխատեն գործնական կեանքի և ոչ-քաղաքական փափագներու համար։ Թէպէտև Ռուսաստանը դանդաղ է զարգանում, բայց նրա դէմքը դէպի ազատութեան արշալոյսն է նայում։

---

## ՇԵՐՎԱՆՇԵԽԻ ԿՈՏՈՐԱԾԸ

---

Ապրիլի 29-ին լրացաւ Շերվանշեխի կոտորածի երկամեակը։

Ռուս յաղթական զօրքի առջևէն փախուստի մատնուած համիդիէի հեծելագունդերը՝ ազատելու համար իրենց ընտանիքը վաղահաս և հետապնդող աղէտէն, ճանճերու բազմութեամբ թափուեցան Շերվանշեխի՝ Բուլանխայ ծայրագաւառի գիւղին մէջը և յափշտակելով տարան բոլոր լծկանները՝ գոմէշ, եզ և այլն։

Քիւրդերու այդ յափշտակութեան գործին լրացուցիչ եղան Ալաշկերտի մուհաճիրները, որոնք այդ տարուայ աշունէն իվեր նոյն գիւղին մէջ տեղաւորուած էին 85 տունէն աւելի և կ'ստանային թէ իրենց և թէ իրենց անասնոց համար պաշար՝ տեղական ժողովուրդէն։ Երկու ժամուայ մէջ այդ մեծափարթամ գիւղը աւլեցին, սրբեցին իւր հարստութենէն։ Զը մնաց, չը մնաց ոչ մի բան։

Քիւրդերն ընդհանուր կոտորածի ոչ մի նշան ցոյց չտուին, Շերվանշեխի համար իրենց վրէժը լուծած կը համարէին լոկ մի քանի ականաւոր անձինք ձեռք ձգելով։

Այդ օրը զոհ գացին 4 անձ, երկուքը եղբայրներ և երկուքը հայր ու որդի։

Այդ օրուայ անակնկալ և ահաւոր սոսկումէն շշմած ժողովուրդը՝ օրինակ առնելով իւր հարևան գիւղը՝ Համզաշեխը, գայլերու վոհմակէն հալածական հօտի պէս, որոնելով իւր փրկութեան ճանապարհը, կորստեան ճամբան ձեռք առաւ։ Գունդագունդ թափուեցան Զէրքէզի գիւղը—Սիմոյը, ուր կը յուսային պաշտպանութիւն գտնել իրենց աղուհացկեր քիրվաներէն։ Երկու

հարևան ժողովուրդները մի քանի օր շունչ քաշեցին Զէյթէյթունցոց քովը, բայց ամենքի համար էլ մահը անխուսափելի էր, թէև ոչ ոք չէր ուզեր հաւատալ իւր մօտի յոռետես երևակայութեանը։ Եղան շատեր որ իրենց գործած սխալէն հիասթափուեցան և տեսան բացուած անյատակ անդունդը. և ահա գիշեր մը տղամարդոց մի գունդը գաղտնի յառաջ սողաց անցնելու քիւրդի քօչերու մէջէն, որոնք կը հանգչէին գիշերային բաց դաշտին վրայ և կը կարէին բոլոր անցքերը Սիմոյէն—Մանազկերտ փախչող հայերի առջև։

Քիչեր չեղան, որոնք իրենց կեանքը կապեցին իրենց ընտանեացը և զաւակացը հետ, չբաժնուեցան անոնցմէ և անոնց հետ ալ կոտորուեցան ընդմիշտ։ Կառավարութիւնը շուտով իմացաւ Զէյթէքեզների հովանաւորութեան լուրը հայերու մասին. անմիջապէս Լիզէն խրկուեցան գունդ մը վաւաշոտ և արիւնարբու ոստիկաններ՝ բերելու Սիմոյէն հոն անխնամ թողուած, սովալլուկ հայերին և կառավարութեան բարի խնամքին յանձնելու։ Կառավարութեան խորհրդաւոր հրամանը կատարուած էր։ Նոյն օրը ճամբայ ելաւ մի ահագին խառնիճաղանճ բազմութիւն և գիշերը օթևանեց իւր կեանքի վերջին օթևանումը՝ Խարադըլ։

Դրչիս թոյլ չեմ տար յիշելու կանանց և աղջիկներու վրայ կատարած ոստիկաններու լպիրշ և հակամարդկային արարքները։ Յաջորդ առաւօտը խումբը ճամբայ էր ելած դէպի Խարադըլի կամուրջը։ Ոստիկաններն ընկերակցութեամբ մուհաճիրների, խումբին ետևէն և առջևէն կը գնային, որպէսզի ըստ կարելւոյն խիտ և խճճուած քալէր խումբը։ Երբ տղամարդոց խումբը սեղմ շարքերով ելաւ կամուրջին վրայ, ետևէն և առջևէն մէկէն բացուեցաւ համազարկը, նոյնը կրկնուեցաւ և կրկնուեցաւ յաճախ մինչև որ բոլորն ալ կամրջին վրայ ինկան դիտապաստ։ Այդ մարդհունձի ժամուն եղան շատեր որ ակամայ նետեցին զիրենք տասնեակ սաժէն բարձրութեամբ կամուրջէն և իրենց շունչն ու հառաչը յանձնեցին Արածանիի զոռ ալիքներուն։

Այդ օրը Համզաշեխէն և Շիրվանշեխէն զոհ գնացին աւելի քան 400 տղամարդ և գերուեցան գեղեցիկ կին ու աղջիկ։

*Բալըլու* ԱՐՄԵՆԱԿ

# Գեղարուեստ

## ՎԵՐՋԻՆ ԱՂՕԹՔԸ...

Ու հեալէն, ու շնչասպառ՝
Հայ գեղուհին մոլեգնած՝
Կ՚ելլէր, կ՚ելլէր լուռ՝ անբարբառ՝
Բլուրն ի վեր, կթոտած...

Հէգ՝ փարապինդ՝ կրծքին փարթամ՝
Ան նորածինն էր սեղմեր.
Հոգին խռովք, միտքը տարտամ
Լոկ հին սոսկում կը յիշէր...

Ու ալ նուաղ, ալ պարտասուն՝
Ան բարաձայոն էր գտեր.
Մօտ՝ գահավէժ, ռճիրն հեռուն
Զինք ըլկելու էր ելեր...

Ալ կը կենայ հարսն աչաղեղ.
Նայուածքը վեր՝ ակնդէտ.
Կը մրմնջեն շրթներն անմեղ.
«Տէր, Տէր, զաւկիս գթա գէթ...»

Լուռ համբոյրով մոլեխանդ,
Զաւկին ճակատը կ՚օծէ.
Վար կը գնէ ու դէպ անդունդ...
«Զաւակս, Տէր» կը հայցէ...

Հ. ԱՐՏՈՒՐ

# ՏԵՂԵԿԱՏՈՒ

Կ. Հ. Բ. Ընկ. Ախալցխայի որբանոցի օգտին փետրուարի 6-ից մինչև մարտի 6-ը ստացել ենք նուէրներ հետևեալ անձերից՝

Աշիկի և օր. Համասփիւռի պսակադր. հանդիսին հանգանակած՝ 66 ռ. 10 կոպ., Սեդր. Չերքէզեանի միջոցով Սարգիս Խաչատրեանի պսակադր. հանդիսին հանգանակած՝ 30 ռ., Խորէն Ֆանտաճեանի միջոցով Արշակ Շահանեանի պսակադր. հանդիսին հանգանակած՝ 23 ռ. 5 կոպ., Զաք. Սարայդարեանի միջոցով Մարտիրոս Պապոյեանի զատեր նշանադրութեան հանդիսին հանգանակած՝ 25 ռ., Խորէն Նալբանդեանից՝ պ. Յակոբ Մեծատունեանի նուիրածը՝ 10 ռ., Մարտիրոս Պետրոսեանի միջոցով Յակ. Չերքէզեանի պսակադր. հանդիսին հանգանակած՝ 49 ռ. 50 կ., Մկ. Մուրադեանի և Վահան Չիլինգարեանի խնջոյքներին հանգանակած՝ 50 ռ., Սեդր. Չերքէզեանից իրանց տան խնջոյքին հանգանակած՝ 40 ռ., Յակոբ Քրիստոստուրեանի և Լ. Սուճեանի միջոցով Կ. Յովհաննէսեանի և օր. Ե. Մէլիքեանի պսակադր. հանդիսին հանգանակած՝ 23 ռ. 25 կ., Ս. Սվաղճեանի միջոցով Վաղարշակ Ֆիտանեանի անուանակոչ. հանդիսին հաւաքած՝ 25 ռ., Ս. Սվաղճեանից իւր ընկ. շրջ. հանգանակած՝ 12 ռ., Տ. Հայկանդուխտ Պահլաւունուց (Բալախանուց), ի յիշատակ իւր հանգուց. քրոջ՝ Փեփրոնէի՝ 50 ռ., Ս. Սվաղճեանի միջ. Դիւլին Տնկողեանից նուէր՝ 5 ռ., նոյն անձի միջոցով Սարգ. Աւետիսեանից՝ 3 ռ., Արշակ Երևանցեանից՝ 3 ռ., Մելքոն Կապոյեանից՝ 1 ռ., Դաֆնի Սերգոյից՝ 3 ռ., Մարտ. Կողփոյեանից՝ 3 ռ., Արիստ. Կազմաբարեանի տան խնջոյքում հանգանակած՝ 15 ռ. և Յակ. Եորտանեանի բաղնիքում հանգանակած՝ 7 ռ., բոլորն էլ վերոյիշեալ պարոնի միջոցով։ Դր. Խզարկեանից, իւր որդու Հայքի Լևոնի հարսնատեսութեան հանդիսին հանգանակ.՝ 26 ռ. 15 կ., Օր. Հռիփսիմէ Յակոբեանից՝ պ. Յակ. Չերքէզեանի պսակադր. հանդիսին հաւաքած՝ 5 ռ. 50 կ., օր. Վարդանոյշ Սվաղճեանից՝ իրանց տան խնջոյքում հանգանակած՝ 25 ռ., Սեդր. Սվաղճեանից՝ Ֆանտագիա այգում՝ Յովհ. Գասպարեանի հետ հաւաքած՝ 8 ռ., Տիկին Դշխուհի Բագրատունուց ի յիշատակ իւր վաղամեռիկ որդու՝ Արդուլ-Մհերի 25 ռ., Մանուկ Մովսիսեան—նոյն հանգուցեալի յիշատակին պսակի փոխարէն՝ 15 ռ., տ. Էլլիզ Քիրիչճեանից՝ իւր հանգուցեալ եղբօր՝ նոյն Արդուլ Մհերի յիշատակին՝ 10 ռ., տ. Աղանբէգեանը որբերին տուել է մի քանի տասնեակ կոճակ։ Արամ Ծիրացեան և ընկ. իւրեանց ցորենաղաց մեքենան և նկուղը ձրի տուել էր որբանոցին ամռով գործածելու և այլն նուէրներ, որի համար բոլոր այդ նուիրատուներին Որբախնամ Մասնախումբը յայտնում է իւր շնորհակալութիւնը։

*Որբախնամ Մասնաժողովի նախագահ՝* Խ. ԹԷԽՄԻՃԵԱՆ

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ընկերութեան Շուլաւերի ճիւղի վարչութիւնս յայտնում է իւր խորին շնորհակալութիւնը մեր հայրենակից Թիֆլիսաբնակ մեծարգոյ պ. Գէորգ Չիլինգարեանցին, արժ. Յովհաննէս աւագ քահանայ Մարտիրոսեանցին և Եսենտուկում բընակուող պ. Արտաշէս Երիբէկեանցին, որոնք գրուեցին ճիւղիս մշտական անդամ. պ. Չիլինգարեանը միանուագ վճարեց հինգհարիւր (500) ռ., իսկ միւսները՝ մի մի հարիւր (100) ռ., այլև Թիֆլիսաբնակ Տիկին Հայկանուշ Մարտիրոսեանին, որ ի յիշատակ իւր հանգուցեալ ամուսին Ռոստոմ Մարտիրոսեանցի՝ նուիրեց հարիւր (100) ռ.։

*Նախագահ վարչութեան՝* Վ.ԱՀԱՆ ՄԻՐԱՔԵԱՆ

*Քարտուղար՝* ՅՈՎՀ. ՔՀ. ՎԵՐԱՆԵԱՆ

# ՊՈՍՏ-ԱՐԿՂ

Նիժ, Ա. ք. Տէր-Յովսէփեանին.— Ձենք կարող այդքան երկար յօդուածներ ընդունել։

Գետաշէն, Վ. Մ.-ին.— Պէտք է գրել կարճ և միայն մի երեսի վրայ. չի տպուիլ։

Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1